## Ալպանիոյ Սահմանադիր ժողովը

Թիրանայէն կը հաղորդեն թէ Սահմանադիր ժողովը իր երրորդ նիստին մէջ ընդհանուր գիծերով վիճաբանեցաւ Սահմանադրութիւնը վերաքննելու մասին։ Բազմաթիւ հռետորներ ցոյց տուին թէ անհրաժեշտ է այդ վերաքննութիւնը եւ յայտարարեցին թէ «ընդ առաջ երթալով ժողովուրդին փափաքին, և նկատի առնելով Ալպանացիներու հոգեբանութիւնը, բարքերը եւ պատմական աւանդութիւնները», պէտք է միապետութիւն հռչակել եւ Իսքէնտէր պէյի գահը բարձրացնել ազգային փրկիչը՝ Ահմէտ Զօկուն։

Ճառախօսները խանդավառ ծափեր ընդունեցին։

Թիրանայի մէջ դարձեալ մեծ ցոյցեր տեղի ունեցան՝ ի պատիւ Ահմէտ Զօկուի։ Կիներու եւ երիտասարդներու միութիւններու ներկայացուցիչները ներկայացան Նախագահին եւ յայտնեցին անոր թէ՝ կը փափաքին զինքը թագաւոր տեսնել։ Ցոյցերը տեւեցին մինչեւ կէս գիշեր։

⁂ Տակաւին որոշ չէ թէ Ահմէտ Զօկու Իտալիոյ ո՞ր իշխանուհիին հետ պիտի ամուսնանայ։ Սերպ թերթերու համաձայն, Զօկու կ՚ուզէ խնամիական կապերով կապուիլ Իտալիոյ՝ ի հարկին անոր զինուորական աջակցութենէն օգտուելու համար։

Ահմէտ Զօկու կ՚ուզէ ամուսնանալ Իտալիոյ թագաւորին երրորդ աղջկան՝ իշխանուհի Ճովաննայի հետ, որ աւելի գեղեցիկ է. Մուսոլինի ալ համամիտ է. սակայն թագաւորը կը հակառակի, որովհետեւ Պորիս թագաւորին հետ իշխանուհիին նշանտուքը գրեթէ կատարուած իրողութիւն է։

## Եթէ Թուրքիա եւ Յունաստան պատերազմին...

«Միլիէթ»ի Աթէնքի թղթակիցը կը հաղորդէ.— Հելլէն թերթերը նորէն սկսած են «Եավուզ»ով զբաղիլ։ Առաջ կ՚ըսէին թէ Թուրքիա գերակշիռ պիտի հանդիսանայ Արքիպեղագոսի մէջ, եթէ «Եավուզ»ը նորոգէ։ Հիմա դիտել կուտան թէ, ինչ ալ ըլլայ, իրենցն է գերակշռութիւնը։

Ծովային սպայ մը, Փափա Եուվանա, կը գրէ զօր. Փանկալոսի օրկան «Փարաթիրիթթի»ի մէջ. «Մօտ ատենէն պատերազմը անխուսափելի է Թուրքիոյ եւ Յունաստանի միջեւ։ Պատերազմին պատճառն ալ Թուրքերը պիտի ըլլան։ Պատերազմի պարագային, Թուրքերը պիտի կարենան մեծ դժուարութեան մատնել մեր նաւատորմը. որով, պէտք է զգուշական միջոցներ խորհիլ հիմակուընէ»։

## Ռումբի պայթում Մարսիլիոյ մէջ

Մարսիլիայէն կը հաղորդեն օգոստոս 31 թուականով.—

Այս գիշեր քաղաքին կեդրոնը Շաթօ-Ռըտօն փողոցի մէկ պանդոկի նրբանցքին մէջ ռումբ մը պայթեցաւ։ Դուռ մը քանդուեցաւ, սրահին պատը ճեղքուեցաւ եւ ձեղունը մասամբ փլաւ։ Անձի կորուստ չկայ, նիւթական վնասը մեծ է։ Ռումբէն ոչ մէկ կտոր գտնուեցաւ։ Պայթումին պատճառները բոլորովին անծանօթ կը մնան։ Ոստիկանութիւնը քննութիւն կը կատարէ։

## Բծաւոր ժանտատենդ չկայ

Մարսիլիոյ քաղաքապետը ծերակուտական տօքթ. Ֆլէսիէր, եւ քաղաքապետութեան առողջապահական մարմնի տնօրէնը պաշտօնապէս կը հաղորդեն թէ 1928ի ընթացքին ո՛չ մէկ բծաւոր ժանտատենդի դէպք, ո՛չ ալ ուրիշ ո եւ է համաճարակ հիւանդութիւն պատահած է Մարսիլիոյ մէջ, հակառակ ֆրանս. թերթերու հրատարակութեանց։

## Անգլիա եւ Մակեդոնացիները

«Տէյլի Թէլէկրաֆ»ի դիւանագիտական աշխատակիցը կը տեղեկանայ թէ՝ անգլիական կառավարութիւնը նոր ծանուցագիր մը ուղղած է կարգ մը պետութեանց, բացատրելու համար թէ ինչո՞ւ կատարուեցաւ օգոստոս 10ի անգլեւֆրանսական դիմումը Սոֆիայի մէջ։

Օգոստոս 3ին Անգլիա ծանուցագրով մը հրաւիրած էր նաեւ իտալական կառավարութիւնը՝ միանալ իրեն, սակայն Իտալիա պատճառաբանեալ կերպով մերժած էր։

## Ութ հոգի սպաննուեցան

Ալլոնի (Քալվատոսի նահանգ) տինամիթի գործարանին մէջ առջի օր պայթում մը տեղի ունեցաւ։ Սպաննուեցան ութ եւ վիրաւորուեցան 16 բանուորներ։ Ծանր վիրաւորները Հօնֆլէօրի հիւանդանոցը տարուեցան։ Ուրիշ անգամ ալ արկածներ պատահած են յիշեալ գործարանին մէջ, սակայն այս անգամուանը աւելի ծանր էր։ Քանի մը շէնքեր եւ ստորերկրեայ եօթը խուցեր օդը ելան։ Գործարանը կը գտնուի անտառի մը խորը, Հօնֆլէօրէն երեք քիլոմեդր հեռու։ Այս վերջին քաղաքէն լսուեցաւ անոր պայթիւնը։ Քաղաքապետը փութաց աղէտին վայրը։

## «Ազատ Թուրքիա» թերթին դատավարութիւնը

Պոլսոյ Պատժադատ Գ. ատեանը սկսած է զբաղիլ վերջերս կառավարութեան կողմէ փակուած «Հիւր Թուրքիա» անուն թերթին դէմ ընդհ. դատախազութեան կողմէ բացուած դատով։

«Հիւր Թուրքիա»յի փակումէն քիչ վերջ, այդ թերթին արտօնատէր-խմբագրապետ Վէզիր օղլու Էօմէր Ազիզ եւ պատասխանատու-տնօրէն Տօքթ. Մէհմէտ Ճէմիլ պէյերը Պոլսոյ կուսակալութեան դիմելով գրական եւ տնտեսական «Ասրի Թուրքիա» անուն պարբերաթերթի մը հրատարակութեան արտօնութիւնն ալ առած են։ Այս թերթին առաջին թիւին մէջ իսկ, անոնք հրատարակած են շարունակութիւնը «Այս երկրին մէջ Հայերը ի՞նչպէս կրնան երջանիկ ըլլալ» խորագիրը կրող յօդուածին, որուն պատճառաւ դադրեցուցուած էր «Ազատ Թուրքիա»ն։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ խորհուրդը երէկ գումարուեցաւ փուանքարէի Սանփիէրի սեփական ամարանոցին մէջ, տօնելու համար վարչապետին ծննդեան 68 ամեակը եւ միացեալ կառավարութեան երկրորդ տարեդարձը։

ՄԱՔՍԻՄ Գորկի իր պտոյտէն վերադարձաւ Լէնինգրադ, ուր ծանր կուրաղետապէ կը տառապի։

ԹՈՒՐՔ կառավարութիւնը պաշտօնի հրաւիրեց տասը Ֆրանսացի փրոֆէսէօրներ, որոնք գիտութիւն եւ ֆրանս. գրականութիւն պիտի աւանդեն Պոլսոյ եւ Իզմիրի լիսէներուն մէջ։ Տասը Թուրք պետական ուսանողներ պիտի ղրկուին Ֆրանսա՝ իրենց ուսումը կատարելագործելու համար։

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

(ՀԻՄՆՈՒԱԾ 1922ին) Հիմնադիր-ղեկավար Տ. ՆՇԱՆԵԱՆ

Է. ՇՐՋԱՆ 1928—1929 101րդ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԲԱՑՈՒՄ Է. ԹԱՏԵՐԱՇՐՋԱՆԻՆ*

14 Հոկտեմբեր 1928 կիրակի գիշեր ժամը ճիշդ 8.30ին

Théatre Albert I, 64 Rue Rocher

Բովանդակ աշխարհի հայ բեմերուն վրայ առաջին անգամ ըլլալով եւ մասնաւոր արտօնութեամբ

Société des Auteurs et Compositeurs Dramatiquesի

կը ներկայացուի յայտնի թատերագիր ROMAIN COOLUSի

### ՍԻՐՏ ՍՐՏԻ կամ ՍՐՏԵՐՈՒ ՊԱՅՔԱՐ...

(COEUR à COEUR)

Աշխարհահռչակ սիրային եւ բարոյալից մեծ տռամ 3 արար

կը մասնակցին փարիզահայ բեմին ամենալաւ ուժերը

*ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՄՕՏ ՕՐԷՆ*

Ծանօթ.— *Կը խնդրուի Փարիզի հայ կազմակերպութիւններէն եւ միութիւններէն նկատի ունենալ այդ թուականը։*

## Դ Ա Շ Տ Ա Հ Ա Ն Դ Է Ս

կազմակերպուած Ժուանվիլի Հ. Մ. Ը. Մ.ի մասնաճիւղին կողմէ

Այսօր կիր. առաւօտ ժամը 9էն 20, Ատանվիլի գեղատեսիլ գետափը

Հասցէ՝ L'Arche de Noé (Նոյեան տապան) dans le bas de la rue du Barrage. Créteil (Seine).

*Անձրեւի պարագային պատսպարուելու տեղ։*

ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑՆԵՐ.— Porte Vincennetէն Թռամ. 110a, 110b, իսկ Bastilleէն 13b, իջնել Place d'Adamville.




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

Ժողովի բեմէն պահանջեց Հէննոսեան գրաւուած հողամասերու պարպումը:

— «Ժողովուրդները ի՛նչպէս կրնան հաւատք ունենալ Ազգերու Դաշնակցութեան եւ խաղաղութեան դաշինքներուն վրայ, երբ կը տեսնեն թէ իրենց կառավարութիւնները հաւատք չունին միջազգային այդ համաձայնութեանց վրայ: Ի՞նչպէս կրնանք պայքարիլ ժողովուրդի սկեպտիկութեան դէմ՝ երբ կառավարութիւնները կը գործեն այնպէս— իբրեւ թէ խաղաղութեան երաշխիքները գոյութիւն չունենային: Հանրութիւնը կը կարդայ որ կառավարութիւնները հանդիսաւորապէս համաձայն են պահպանել խաղաղութիւնը, սակայն կը շարունակեն պահել իրենց նախկին ուժեղ դիրքերը եւ նոյն իսկ նորերը կը փնտռեն: Ժողովուրդը կը կարդայ որ պետութիւնները հրապարակաւ փոխադարձ վստահութիւն կը յայտնեն իրարու, սակայն կը տեսնէ որ խնդիրները կը մնան հոն՝ ուր էին եւ Ընդհ. Պատերազմէն ի վեր գրուած պատնէշները կը մնան դեռ:»

Եզրակացնելով, կը պահանջէ Հէննոսեան հողերու պարպումը:

Երէկ Պրիան պատասխանեց Գերմանիոյ վարչապետին:

## Կարմիր բանակի ռազմափորձերը

Ինչպէս գրեցինք, կարմիր բանակի ռազմափորձերը սկսած են: Պատերազմական գործավար Վորոշիլոֆ Քիեւ հասաւ: Կառավարութիւնը ժողովուրդին ուղղուած յայտարարութիւնով մը կոչ կ'ընէ խուճապի չմատնուիլ եւ դժուարութիւններ չհանել՝ պարէնի գնման եւ մթերումին դէմ, քանի որ եղածը իրական պատերազմ մը չէ: Արհեստակցական միութիւնները մեծ պատրաստութիւններ տեսած են՝ հաղորդակցութիւն պահելու և պարէն հայթայթելու համար բանակին, որ կեդրոնացած է Քիեւի շուրջ: Բացի արհեստակցական ջոկատներէ, 300,000 կանոնաւոր զինուորներ կը մասնակցին ռազմափորձերուն, որոնց մաս կը կազմէ նաեւ օդէն «կազային յարձակում» մը Քիեւի վրայ:

Խորհրդային Միութեան միւս մասերուն վրայ եւս ռազմափորձեր կը կատարուին: Լէնինգրադի շրջանին մէջ «աշխատաւորական ռազմափորձեր» տեղի պիտի ունենան գալ շաբաթ, մասնակցութեամբ զինեալ արհեստակցականներու, որոնք բաժնուած են զանազան ջոկատներու՝ հրացանակիր, հրշէջ, ռմբաձիգ: Կարմիր բանակի սպաներն ալ պիտի մասնակցին՝ հրասայլերով: Լէնինգրադի շրջանին վերին հրամանատար Տուխաշեւսկի պիտի վարէ ռազմափորձերը: Քանի մը օր առաջ, Պալթիկի նաւատորմին ռազմափորձերուն առթիւ, գիշերային օդային յարձակում մը գործուեցաւ Քրոնշթատի վրայ, որ ծանր կորուստներու ենթարկուեցաւ:

Նոյնպէս քանի մը օր առաջ, երիտասարդ համայնավարներու Միջազգայինի համագումարին առթիւ, ռազմափորձեր կատարուեցան Մոսկուայի շրջանին մէջ: «Անգլիական նաւատորմը» յանկարծակի յարձակում մը գործեց Մոսկվա գետին վրայէն: Յարձակումը ետ մղուեցաւ միջազգային երիտասարդ համայնավարներուն կողմէ:

### ՊԱՏԵՐԱԶՄԻ ՇՇՈՒԿՆԵՐ ԿԸ ՇՐՋԻՆ

Ռիկայէն հեռագիր մը կ'ըսէ թէ Ուկրայնայի ռազմափորձերուն առթիւ ժողովուրդին մէջ զրոյցներ կը շրջին թէ պատերազմը մօտալուտ է: Քիեւի, Խարքովի եւ ուրիշ քաղաքներու մէջ կարգ մը ուտեստեղէններու գիները շատ բարձրացած են, իսկ մաս մը առարկաներ ալ բոլորովին անհետացած են շուկայէն: Յեղափոխական զինուորական խորհուրդները կոչով մը կ'ըսեն թէ խորհրդային իշխանութեան թշնամիները, շահադէտներն ու «կուլակ»ները պատերազմի զրոյցներ տարածելով՝ կը պահեն ուտեստեղէնները: Անոնք խիստ պատիժի պիտի ենթարկուին:

Սմրդանտի մէջ եւս ռազմափորձեր կը կատարուին՝ կարմիր բանակին և Թուրքիստանի ազգային զինուորներուն կողմէ: Կարգ մը շրջաններու մէջ գրգռութիւն առաջ եկած է կարմիր բանակին դէմ, որովհետեւ զինուորներուն համար առնուած գոյքերուն փոխարժէքը չեն վճարուիր:

## Ջախջախիչ բանաձեւ մը կարմիրներուն դէմ

Անգլիոյ Արհեստակցական Միութեանց Ընդհ. Ժողովը սեպտեմբեր 7ին 566,000ի դէմ 3,075,000 ձայնով, այսինքն հինգ վեցերորդի մեծամասնութեամբ վաւերացուց Վարչական Խորհուրդին քաղաքականութիւնը՝ գործատէրերու հետ հասկացողութեան գալու մասին: Ընդհ. քարտուղարը բանալով վիճաբանութիւնը, յայտարարեց թէ Արհեստակցական Միութեանց պատուիրակները չեն ուրացած իրենց սկզբունքները, թէ կազմակերպուած աշխատաւորութեան պարտքն է մասնակցիլ ճարտարարուեստի զարգացման, որպէս զի աստիճանաբար աւելի լայն հակակշիռ մը ապահովէ անոր վրայ, փոխանակ սպասելու որ դրամատիրական վարչաձեւը տապալի:

Ուժգնօրէն հակառակ արտայայտուեցաւ Պ. Քուք, Հանքագործներու Դաշնակցութեան ընդհ. քարտուղարը, որ համայնավարական հակումներ ունի: Իր ճառը այնքան երկար է եւ ջղագրգիռ, որ Քուք մարեցաւ եւ յարակից սենեակ մը փոխադրուեցաւ: Այնուհետեւ խօսք առաւ միեւնոյն կազմակերպութեան նախագահը, խստօրէն ձաղկելով ընդհ. քարտուղարին եւ բոլոր ծայրայեղներուն արարքները: Նշանաւոր ճառ մը խօսեցաւ նաեւ Պ. Թոմաս, Երկաթուղիի Պաշտօնեաներու Դաշնակցութեան քարտուղարը. խարազանելով համայնավարները. «Ռուսիա կրնայ իր ուզածին պէս վարուիլ, բայց որքան ատեն որ խորհրդային իշխանութիւնները շարունակեն քանդել իրենց երկիրը եւ փորձեն կործանել մերինը, մենք չենք կրնար երկրպագել անոնց առջեւ: Հակառակ համայնավարներու աղմկալի ցոյցերուն, քուէարկուեցաւ ջախջախիչ բանաձեւը:

## Եւապետութիւն Սոֆիայի մէջ

Սոֆիայէն կը հեռագրեն թէ ոստիկանութիւնը գրաւեց «Նէզավէսիմոսթ» լրագրին վերջին թիւը, Զօր. Վոլքոֆի մէկ յայտարարութիւնը հրատարակած ըլլալով: Զօրավարը ճշտելով բանակին դիրքը, կը մերժէ հրաժարական տալ:

⁂ Զօր. Լը Ռոն, Ֆրանսայի սպայակոյտի պետը, որ այս միջոցին ճամբորդութիւն մը կը կատարէ պալքանեան երկիրներու մէջ, Սոֆիա հասաւ Պելկրատէն: Զօրավարը ընդունուեցաւ թագաւորին եւ Վոլքոֆի կողմէ: Յետոյ Էտիրնէ եւ Պոլիս մեկնեցաւ, ուրկէ Յունաստան պիտի անցնի: Քաղաքական շրջանակներու մէջ կը կարծեն թէ ֆրանսացի զօրավարը քաղաքական պաշտօն մը ունի:

## Մ. Քեմալ թագաւոր չպիտի ըլլայ

Անգլիական թերթերը գրած էին թէ՝ Մուսթաֆա Քէմալ մտադիր է ինքզինքը թագաւոր հռչակել՝ տեղի տալով իր բարեկամներու թելադրանքին: Լոնտոնի Թուրք դեսպանը պաշտօնապէս կը հերքէ այս լուրը:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

ազատօրէն գործածելու շինուած ապրանքները (ուրեմն, առեւտուրի ազատութիւն)։ Պիտի վայելեն նաեւ «մուտքի առանձնաշնորհներ». (պիտի դիւրացուին մաքսային ձեւակերպութիւնները)։ Յետոյ, գերծ պիտի ըլլան հաստատուած տուրքերէն, վճարելով միայն «մասնաւոր եւ միակ տուրք մը», որ պիտի գանձուի «մասնաւոր» օրէնքներու համաձայն եւ «մասնաւոր» պաշտօնատան մը կողմէ։ Պայման դրուած է որ արտօնատէրները յանձն առնեն շահագործել միայն դուրսէն բերուած դրամագլուխներ։

## Զինաթափութիւն եւ Գերմանիա

Ազգերու Դաշնակցութեան Ընդհանուր Ժողովին առջեւ Ֆրանսայի պատուիրակ Փօլ Պօնքուրի ճառէն յետոյ, գերման պատուիրակ կոմս Պէրնսթորֆ պարզեց գերմանական տեսակէտը։ Պօնքուր ըսած էր՝ նախ ապահովութիւն, ապա զինաթափութիւն։ Գերման պատուիրակը կ'ըսէ՝ նախ՝ զինաթափութիւն, ապա ապահովութիւն։ Առաջինը կը պահանջէր շուտով խորհրդաժողովի հրաւիրել զինաթափութեան «նախապատրաստական» Յանձնաժողովը, երկրորդը կը պահանջէ «ընդհանուր» խորհրդաժողով հրաւիրել։

Բնականաբար միջին ճամբայ մը պիտի գտնեն այս խնդրին համար ալ։

## Պելժ դահլիճին տագնապը

Պելժ դահլիճը ծանր տագնապ մը կ'անցնէ այս օրերս եւ հաւանական է, որ կառավարութիւնը տապալի՝ եթէ երբեք կառավարական երկու կուսակցութիւնները՝ կաթոլիկներն ու Ազատականները չյաջողին համաձայնութեան մը գալ ընդհանուր ներում շնորհելու համար Ֆլաման անջատողականներուն, որոնք մեծ պատերազմին ծրագրած էին Ֆլանտրայի անկախութիւնը հռչակել եւ տապալել Ալպէր Թագաւորի կառավարութիւնը։

Զինադադարէն յետոյ, այս անջատողականները զանազան պայմանաժամով բանտարկութեան դատապարտուեցան։ Շատերը արտասահման փախան եւ այժմ տարագրութեան մէջ կ'ապրին։

Ֆլաման անջատողականներու պետն էր Տոքթ. Օկիւստ Պօրմս, որ պատերազմական նախարար էր ընդհանուր պատերազմին Պելճիքայի մէջ Գերմաններուն կազմած Ֆլանտրայի Խորհուրդին մէջ։ Այս մարդը դեռ բանտն է։ Կաթոլիկ կուսակցութիւնը կը պահանջէ որ անիկա եւս ընդհանուր ներման արժանանայ, մինչ Ազատականները կ'ուզեն բանտը պահել զայն եւ ընդհ. ներումը սահմանափակել միայն նուազ յանցաւորներուն։

## Մահափորձ Տրոցկիի դէմ.

«Տէյլի Մէյլ» կը տեղեկանայ թէ Տրոցկի, որ Թուրքիստանի Ալմա-Աթթա քաղաքը աքսորուած է, երեք գիշեր յաջորդաբար մահափորձի ենթարկուած է։

Հակառակ գաղտնի ոստիկաններու խիստ հսկողութեան եւ երկաթուղիի ամենամօտ կայարանէն 400 քիլոմեդր հեռու գտնուելուն, Տրոցկի յաջողած է նամակ հասցնել իր քաղաքական բարեկամներուն։ Փարիզի նախկին դեսպան Ռակովսկիի ուղղած իր մէկ նամակին մէջ, Տրոցկի կը պատմէ թէ իր բնակած տունը պաշարուեր է զինեալ մարդոց կողմէ, որոնք կ'ուզէին սպաննել զինքը։

Երեք գիշեր յաջորդաբար ծառերուն մէջ պահուըտած մարդեր կրակ ըրած են տան վրայ։ Տրոցկի եւ զաւակը երկու որսի հրացաններով ինքնապաշտպանութեան դիմած են, Տրոցկի դիմած է տեղական խորհրդային իշխանութեանց, սակայն ի զուր։

## Պատիժ Անգլիոյ թագաւորին տղուն

Անգլիոյ թագաւորին կրտսեր տղան իշխան Ճորճ, որ ներկայիս ծովային սպայ է անգլիական «Տըրհամ» յածանաւին մէջ, վերջերս Քալիֆոռնիա երթալով, երկու օր հաճելի ժամանակ անցուց շարժանկարի ոստանին՝ Հոլլիվուտի մէջ՝ գեղեցիկ արուեստագիտուհիներու հետ։

Իր այս հակակարգապահական արարքին համար, իշխանը 30 օրուան խիստ պատիժի ենթարկուեցաւ։

## Թուրք աւազակներ Միջագետքի մէջ

Պաղտատէն անգլիական թերթերուն կը հեռագրեն, որ Թուրք աւազակներ յարձակում գործած են Իրաքի հիւսիսային սահմանագլուխին երեք գիւղերուն վրայ եւ կողոպտած զանոնք։ Սպաննած են երեք հոգի եւ քշած տարած արջառը։

Անգլիական օդանաւեր ղրկուեցան՝ աւազակները հետապնդելու համար։

## Ուրականի զոհերը

Ֆլորիտայէն կը հաղորդեն որ ուրականին պատճառած կորուստները բոլորովին աննախընթաց եղած են։ Զոհերու ընդհանուր թիւը կը հաշուուի մօտ 1000 հոգի։ Փամ Պիչ նահանգին մէջ 15,000 հոգի առանց ապաստանի մնացած են։ 9000 հոգի Կարմիր Խաչի կողմէ կը կերակրուին։ 8000 հոգի փոխնորդ հագուստ չունին։

Ուրականը Քարիպեան կղզիները, Ֆլորիտայի թերակղզին, Ճորճիայի եւ Քարոլինայի եզերքները աւելէ սրբելէ վերջ, տակաւին այնքան զօրաւոր էր, որ առջի գիշեր 60-70 մղոն արագութեամբ հասաւ մինչեւ Նիւ-Եորքի նաւահանգիստը։ Պզտիկ նաւերու խարիսխները փրթան եւ քաղաքը փոթորկալից անձրեւի տակ մնաց։

Աղէտեալներուն օգնութեան գործը փութով առաջ կը տարուի։ Պանդոկները հիւանդանոցի վերածուած են։ Շատեր կառքերու եւ վակոններու մէջ կը բնակին։ Կարմիր Խաչը ստիպողաբար վրաններ և փայտէ հիւղակներ կը հաստատէ։ Նախագահ Քուլիճի կոչին պատասխանելով, Սան Ֆրանչիսքօ քաղաքը 10,000 տոլար նպաստ ղրկեց։ Ուրիշ քաղաքներու մէջ ալ հանգանակութիւններ կը կատարուին։

Միայն Ֆլորիտայի մէջ նիւթական կորուստն է 10—25 միլիոն տոլար. Ճորճիա նահանգին մէջ բամպակի հունձքին վնասն է մէկ միլիոն տոլար։ Նիւ Եորքէն շոգենաւերը ճամբայ ելան՝ 2 միլիոն տոլար արժէքով ուտելիք եւ հագուստեղէն տանելու համար աղէտեալներուն։

.*. Կուատուլուփի մէջ զոհերու թիւն է 660 հոգի, համաձայն Ֆրանսայի գաղթային նախարարութեան ստացած հեռագրին։

բոյկոտ հռչակել կառավարական կուսակցութեան երեսփոխաններուն եւ անոնց կուսակիցներուն դէմ, որոնք պատասխանատու են տիրող բռնութեանց եւ անարդարութեանց։ Խմբակցութիւնը կը հրաւիրէ ժողովուրդը ամէն յարաբերութիւն կտրել կառավարական կուսակցութեան անդամներուն հետ, ինչպէս նաեւ անոնց հետ որոնք ուժ կուտան ներկայ իշխանութեան, իրենց քաղաքային կամ եկեղեցական հեղինակութեամբ։

Այս որոշումը զգալապէս կը ծանրացնէ երկրին ներքին կացութիւնը։

## Ֆրանսա կը ճանչնայ Ալպանիոյ թագաւորը

Թիրանայի ֆրանսական դեսպանը սեպտ. 21 թուակիր գրութեամբ մը՝ ուղղուած Ալպանիոյ արտաքին նախարարին, կը յայտնէ թէ Ֆրանս. Հանրապետութեան կառավարութիւնը կը ճանչնայ Զօկու Ա.ը իբրեւ թագաւոր Ալպանիոյ։

## Օդանաւային նախարարութիւնը

Տակաւին կարելի չեղաւ վերջնական համաձայնութեան մը գալ օդանաւային Նախարարի իրաւասութեանց մասին։ Բացի առեւտրական Նախարարութենէն, պատերազմական եւ ծովային Նախարարութիւնները եւս ունին մասնաւոր ճիւղեր, որոնք կը զբ..դին պատերազմական եւ ծովային օդանաւերու գործերով։ Օդանաւային Նորընտիր Նախարար Լօրան Էյնաք կը փափաքի այդ բոլոր ճիւղերը միացնել իր Նախարարութեան մէջ, որպէսզի Ֆրանսայի օդանաւային ուժը մէկ մարմնի հսկողութեան ենթարկուի։

Այս մասին վերջնական համաձայնութեան գալու համար քանի մը օրէ ի վեր բանակցութիւններ տեղի կ'ունենան երեք Նախարարներուն միջեւ։ Վերջին լուրերու համաձայն, պատերազմական Նախարար Փէնլըվէ համաձայնած է Լօրան Էյնաքի պահանջներուն, սակայն ծովային նախարար Ժորժ Լէյկ անդրդուելի կը մնայ։

Երեքշաբթի օր երեք նախարարները հաւաքական խորհրդակցութիւն մը պիտի ունենան վարչապետ Փուանքարէի մօտ, եւ չորեքշաբթի Ելիզէի պալատին մէջ գումարուելիք Նախարարական խորհուրդին մէջ վերջնապէս պիտի որոշուին օդանաւային Նախարարութեան իրաւասութիւնները։

⁂ Նոր Նախարարը հրաման տուած է առայժմ յետաձգել օդանաւային ամէն արշաւ, ըլլայ Ատլանտեանը կտրելու, ըլլայ մրցանիշներ կոտրելու համար։

⁂ Նախարարը ընդունեց սպանիացի ճարտարագէտ տը լա Սիէրվան, հնարիչը նոր ձեւի օդանաւի մը՝ autogyre, որուն շնորհիւ օդանաւ մը կրնայ յանկարծ ուղղաձիգ կերպով ցամաք իջնել, առանց վտանգի։

## Կեսարիոյ որբերը կը մեկնին

Պոլսոյ Ազդարարին մէջ կը կարդանք.—

ԿեսարիոյԱռաջնորդարանէն Պատրիարքարան հասած հաամակէ մը կ'իմանանք թէ որբերուն մեկնումը օրերու խնդիր է։ Քսան հատին անցագիրը պատրաստ է արդէն, միւսներուն համար ալ գործողութիւն կը կատարուի։

Ինչպէս յայտնի է, այս որբերը կ'երթան իրենց ազգականներուն մօտ, որովհետեւ ապրելու միջոց չունին։

Ըլիֆը խոստացած է ապահովել ճամբու ծախքը, ինչպէս նաեւ որոշ օգնութիւն մը ընել։

## Նոր գիրերուն օրինագիծը

Թուրքիոյ կրթական գործավարութիւնը նոր գրերու ընդունելութեան համար կը պատրաստէ օրինագիծ մը, որ երեք չորս յօդուածէ կը բաղկանայ։ Գիրերուն գործածութեան ժամանակն ու եղանակը որոշելու համար հաւանական է որ կառավարութեան իրաւասութիւն տրուի։

## Հաց չկայ Լենինգրադի մէջ

Մոսկուայէն կը հեռագրեն թէ հացի տագնապը կը սաստկանայ։ «Լէնինգրադսկայա Պրաւդա» առաջին անգամ ըլլալով կը խոստովանի թէ ժողովուրդը պոչ կը կազմէ փուռերուն առջեւ։ Զրոյց կը պտտի թէ հաց չպիտի գտնուի ամբողջ մէկ ամիս։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

*այս կարգի նաւերուն վերապահելը անհուհօրէն պիտի զօրացնէ յարձակողական ուժը պետութեան մը, որ առեւտրական շատ նաւեր ունի, եւ որոնց վրայ խաղաղութեան ժամանակ կարելի է աշխատանքներ կատարել՝ ի հարկին վեց մատնաչափնոց թնդանօթ զետեղելու համար»։*

*Ծանուցագիրը նոյն դիտողութիւնները կ'ընէ նաեւ սուզանաւերուն համար։ Ամերիկա չի կրնար ընդունիլ որ 600 թոնոյէն վեր սուզանաւերը եւ անկէ վարինները երկու տարբեր դասակարգեր կազմեն։ Ամերիկա շատ երջանիկ պիտի ըլլար եթէ սուզանաւերը ամբողջովին ջնջուէին, բոլոր ազգերու հետ միաժամանակ։ Իսկ եթէ անոնք պիտի պահուին իբրեւ միջոց նաւային պատերազմի, անոնց համար տրամաբանական տարողութիւն եւ քանակ մը պէտք է որոշել։*

*Ծանուցագիրը յետոյ կ'ընէ դրական առաջարկ մը։ Կ'ըսէ թէ ամերիկեան կառավարութիւնը պատրաստ է նկատի առնել Ֆրանսայի, Իտալիոյ կամ ուրիշ նաւային պետութեանց մասնաւոր շահերը այն դասակարգի մարտանաւերուն համար, որոնք աւելի լաւ կը յարմարին իրենց պաշտպանութեան։ Ասիկա կարելի է իրականացնել՝ արտօնելով իւրաքանչիւր պետութիւն, որ իրեն յատկացուած ընդհանուր տարողութեան մէջ դասակարգի որոշ փոփոխութիւններ մտցնէ, համաձայն իր պէտքերուն։ Այս ուղղութեամբ Ֆրանսայի կողմէ ըլլալիք առաջարկ մը՝ համակրանքով նկատի պիտի առնուի Ամերիկայի կողմէ։*

*Լոնտոնի ամերիկեան դեսպանն ալ նոյնիմաստ ծանուցագիր մը յանձնեց Անգլիոյ արտաքին նախարարին։*

## Խաղողի հրապարակին տագնապը

*Իզմիրի այգեպանները ծանր տագնապ մը կ'անցնեն, գնորդի անբաւականութեան եւ գիներու անկումին պատճառով։ Այս առթիւ կատարուած դիմումներուն վրայ, ոգելից ըմպելիներու վարչութիւնը որոշած էր մեծաքանակ գնում կատարել։*

*Այգեպանները այս կացութեան հանդէպ մեծ շուարման եւ մտահոգութեան մատնուած են, որովհետեւ խաղողի վաճառումը լրանալու վրայ է արդէն ու կասկածելի է որ նոյնիսկ ծախքերը հանեն հրապարակի ներկայ գիներով։ Գիները այնքան ինկած են որ քանի մը օր առաջ 28 ղրշ. գին ունեցող խաղողը հիմա 15 ղրշ.ի կ'առաջարկուի։*

*Մաղնիսայի շրջանը, ուր ժողովուրդին ամբողջ կեանքը այգեպանութեամբ կ'անցնի, խղճալի վիճակ մը կը ներկայացնէ։*

## Հակաբոլշեւիկ դաւադրութիւն մը

*Մոսկուայի պաշտօնական գործակալութիւնը կը հաղորդէ որ Կրասնոտարի (Կուբանի շրջան) երկրագործական հիմնարկութեան ուսանողներուն մօտ հակայեղափոխական դաւադրութիւն մը երեւան հանուած է։ Կազմակերպութեան վարիչներն են նախկին սպաներ եւ պաշտօնեաներ։ Դաւադիրները ծրագրած էին ահաբեկումներ կատարել բոլշեւիկ ներկայացուցիչներուն դէմ, օդը հանել զանազան հանրային հիմնարկութիւններ եւ ուրիշ խռովութիւններ յարուցանել։*

## 150 փրանքի տեղ 150,000

*Սեպտ. 1ին Էմմանուէլ Սքալիա անուն իտալացի բանուոր մը փարիզեան դրամատան մը ներկայացաւ չէք մը գանձելու համար։ Սքալիա ամուսնացած էր եւ ունէր 15 տարու կաղ տղայ մը եւ 2 տարու երախայ մը։*

*Չկարենալով ապրեցնել իր ընտանիքը, ամէն ամիս դրամական օգնութիւն կը ստանար ամերիկաբնակ իր եղբօրմէն։ Բայց երբեք այդ օգնութիւնը 150 ֆրանքէն աւելի չէր ըլլար։ Վերջին անգամ Սքալիա երեք զերօ աւելցուցած էր 150ին վրայ։ Երբ դրամատան պաշտօնեան տեսաւ չէքը, անմիջապէս վճարեց 150,000ը։ Միայն իրիկուան դէմ է որ պաշտօնեան հասկցաւ սխալը, սակայն արդէն շատ ուշ էր։ Սքալիա ընտանիքով մեկնած էր Թօքվիլ փողոց 89 թիւ պանդոկէն, ուր կը բնակէր։ Ոստիկանութիւնը կը փնտռէ վարպետորդին։*

## Պետական նպաստ ազգային թատրոններուն

*Երեսփոխանական ժողովի ելմտական յանձնաժողովը Գեղարուեստի ելմտացոյցը քննած ատեն՝ կարգադրած էր, որ ազգային թատրոններուն տրուած նպաստը աւելցուի։*

*Կրթական նախարար Էրիօ իր հաւանութիւնը տուած ըլլալով այս կարգադրութեան, խորհրդարանի վաւերացման պիտի ենթարկուի։ Այս ձեւով 1929էն սկսեալ Օփերան պիտի ստանայ տարեկան 2,400,000 ֆրանք, Օփերա-Քոմիքը մէկ միլիոն, Քոմէտի Ֆրանսէզը՝ մէկ միլիոն, Օտէոնը՝ 400,000 ֆր., Ժողովրդական Թատրոնը (Թրոքատէրօ) 200,000 ֆրանք։ Ուրեմն Օփերայի եւ Օփերա Քոմիքի նպաստները կ'եռապատկուին, Քոմէտի Ֆրանսէզինը կը քառապատկուի, Թրոքատէրոյինը կը կրկնապատկուի։*

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

*ԿՈՐՆԹՈՍԻ մէջ երկրաշարժի նոր ցնցումներ պատահեցան՝ խուճապի մատնելով բնակչութիւնը։ Նոր շինուած տուներու պատերուն մէջ ճեղքեր բացուեցան։ Հազարաւոր մարդիկ դաշտերը ապաստանեցան։*

*ԹԵՀՐԱՆԷՆ պաշտօնապէս կը հերքեն այն լուրը թէ Րիզա շահ այս ձմեռ Եւրոպայի մայրաքաղաքները պիտի այցելէ։*



Le Gérant: E. SOUVIGNY



**"ԿԱՎՌՈՇ„Ի ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ՀՈԿՏԵՄԲԵՐ 20ԻՆ**